(Իրականին մէջ 17) ճարել: Ուժի փորձ մըն է որ կը պարտադրուի մեզի, ուժի փորձ մը՝ միահեծան կարգուսարքին եւ ազատութեան կարգուսարքին մէջ որ մերինն է»:

Ճառին մնացեալ մասը լուսաբանութիւնն էր նոր օրէնքներուն: Այս առթիւ նախարարը յայտարարեց թէ Ֆրանքը դարձած է Եւրոպայի առաջին դրամը: «Դեռ երէկ երեք Թռն ոսկի աւելցաւ այն հարիւրաւոր Թռն ոսկիներուն վրայ որ երկիր վերադարձած են հինգ ամիսէ ի վեր: Ֆրանքի երաշխաւորութեան վարկը այնքան զօրաւոր է որ որոշեցի 5 միլիառ ֆրանք փոխադրել Պանք տը Ֆրանս: Հակառակ նոր տուրքերուն, որ կը գանձուին անցեալ նոյեմբերէն ի վեր, ճարտարարուեստական արտադրութիւնը աւելցած է 12 առ հարիւր համեմատութեամբ»:

Նախարարը ճառը վերջացուց ջերմ կոչ մը ուղղելով միութեան եւ աշխատանքի, շահելու համար խաղաղութիւնը:

Ձախակողմեան թերթերը դառնօրէն կը քննադատեն նոր հրամանագիրները, գործադրկութեան յաւելում, ապրուստի սղութիւն եւ ուրիշ չարիքներ նախատեսելով:

## ԴԻՒԱՆԱԳԻՏԱԿԱՆ ՄԵՔԵՆԱՆ ԱՆԸՆԴՀԱՏ ԿԸ ԲԱՆԻ

### Անգլօ-ռուս բանակցութիւններ

Ինչպէս գրած էինք, Մոսկուա նոր առաջարկներ ներկայացուցած է Ֆրանսայի եւ Անգլիոյ, իր գործակցութեան մասին: Այդ առաջարկները կ'անցնին մինչեւ հիմա ծրագրուած ապահովութեան դաշինքի սահմանը, ինչ որ լրջօրէն մտածել կուտայ ֆրանսական եւ անգլիական կառավարութեանց:

Փարիզ Մոսկուայի առաջարկած էր օգնել Ռումանիոյ եւ Լեհաստանի, մնալով ֆրանքեւռուս դաշինքի սահմաններուն մէջ: Իսկ Լոնտոն աւելի լայն առաջարկներ ներկայացուցած էր Մոսկուայի: Այս վերջինը հակառաջարկներ ներկայացուցած է երկուքին ալ:

Լոնտոնի թերթերը կը գրեն թէ անգլիական կառավարութիւնը տրամադիր է փոխադարձ աջակցութեան դաշնագիր մը կնքելու Անգլիոյ, Ֆրանսայի եւ Խ. Միութեան միջեւ: Դժուարութիւնները չեն հարթուած տակաւին: Նախապէս ծրագրուած էր ապահովութեան դաշինքը սահմանափակել Եւրոպայի մէջ, իսկ Մոսկուա կ'ուզէ որ երաշխաւորութեան տակ առնուի նաեւ Ծայր. Արեւելքը:

Փարիզի անգլիական դեսպանը երկու կարեւոր տեսակցութիւններ ունեցաւ Պ. Տալատիէի եւ Պ. Պոնէի հետ:

Կը թուի թէ լեհական խնդիրը երկրորդական աստիճանի վրայ դրուած է այժմ եւ գլխաւոր ուշադրութիւնը դարձած դէպի Թուրքիա եւ արեւելեան Միջերկրական, մանաւանդ հիմա որ Գերմանիա Անգարայի դեսպան նշանակած է Ֆոն Փափէնը:

Զրոյցներ կը շրջին թէ Հիթլէր իր ապրիլ 28ի ճառին մէջ ծանրակշիռ պահանջներ պիտի դնէ, հաւկցնելով թէ Առանցքին արշաւը պիտի շարունակուի դէպ ի Սելանիկ, Ուկրայնա, Աֆրիկան եւ Միջերկրական:

*** Երէկ, շաբաթ, Եուկոսլավիոյ արտաքին նախարարը կարեւոր տեսակցութիւն մը ունեցաւ Իտալիոյ արտաքին նախարարին հետ, Վենետիկի մէջ:

Կը հաստատուի թէ Կոմս Չիանօ ամէն ջանք պիտի թափէ, Եուկոսլավիան ալ խտալեւգերման ճակատին կապելու համար: Կ'ըսուի թէ այս ծրագրին մէջ յաջողելու համար Հունգարիան պիտի համոզէ որ հրաժարի հողային ամէն պահանջէ Եուկոսլավիայէն, ինչպէս նաեւ Պերլին եւ Հռոմ երաշխաւորեն Եուկոսլավիոյ հողային ամբողջութիւնը:

Վերջին լուրերու համաձայն, Եուկոսլավիա մտահոգութեան մատնուած է, հաւանելով հանդերձ Ալպանիոյ գրաւման: Այս միջոցին 200.000 իտալական զինուորներ կը գտնուին Եուկոսլավիոյ սահմաններուն վրայ, ինչպէս եւ 100 հազար սեւ շապիկաւորներ, յետոյ գերմանական երեք զօրաբանակներ՝ Շթիրիոյ մէջ: Ուրեմն այս երկիրը պաշարուած է ցամաքէն, իսկ ծովէն իտալական նաւատորմը միշտ պտոյտներ կը կատարէ:

Եուկոսլավիոյ արտաքին նախարարը հրաւիրուած է նաեւ Պերլին, ինչ որ աւելի ծանրակշիռ հանգամանք մը կուտայ Պալքաններու կացութեան: Այս այցելութիւնը տեղի պիտի ունենայ ապրիլ 25ին: Գերմանիա ամէն միջոց կը փորձէ, իր թաթին տակ պահելու համար Ռումանիան, Հունգարիան եւ Եուկոսլավիան:

*** Փարիզի քաղաքական շրջանակներուն մէջ շրջած զրոյցի մը համաձայն, Հիթլէր հարցում ուղղած է Րուզվէլթի յիշած բոլոր պետութիւններուն, թէ «դուք ձեզ վտանգուած կը նկատէ՞ք»: Ստացած պատասխանները պիտի յիշէ իր ապրիլ 28ի ճառին մէջ:

*** Վերջին լուրերու համաձայն, անգլիական կառավարութիւնը որոշած է ճանչնալ Ալպանիոյ գրաւումը, յանձնարարելով Հռոմի դեսպանին՝ այս պարագան հաղորդել Մուսոլինիի: Դեսպանը երկար տեսակցութիւն մը ունեցաւ Իտալիոյ Արտաքինոցին հետ, իր հրաժեշտի այցելութեան առթիւ: Ուրեմն բրիտանական դեսպանը իր յանձնարարագիրը պիտի ներկայացնէ «Իտալիոյ եւ Ալպանիոյ Թագաւորին, կայսր Եթովպիոյ»:

### ՋԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՍՈՒՐԻՈՅ ընդդիմադիրները գիրք բռնած ըլլալով նոր դահլիճին դէմ, խորհրդարանի նիստերը յետաձգուեցան մէկ ամիս: Այս առթիւ պառակտում ծագեցաւ ազգայնական խմբակցութեան մէջ: Կացութիւնը բարւոքած կը թուի: Շատ մը խանութներ, որոնք փակուած էին աւելի քան մէկ ամիսէ ի վեր, վերաբացուեցան Դամասկոսի մէջ: Հալէպի շուկան ալ գրեթէ ամբողջովին վերաբացուած է:— Կուրերը կը շարունակուին Ճիւրտ Տաղի մէջ: Ըմբոստները ծանր պարտութիւն մը կրեցին: Ֆրանսական զօրքէն սպաննուած են երկու զինուոր եւ ենթասպայ մը:

«ԵՐԿՈՒ ՌՈՒՄԲ պիտի պայթին Օփերային մէջ»,— ազդարարուած ոստիկանութեան, հեռաձայնով: Անմիջապէս 30 ոստիկանական պաշտօնեաներ գացին Օփերա, հրշէջներու հետ, եւ սպասեցին մինչեւ մէկ ժամ, բայց ոչինչ պատահեցաւ եւ «Ֆաուստ»ի ներկայացումը տեղի ունեցաւ սովորականին պէս:

ՀԻԹԼԷՐԻ 50ամեակին առթիւ Մուսոլինի շնորհաւորական հեռագիր մը ուղղելով, փառաբանեց իտալեւգերման գործակցութիւնը եւ յայտնեց թէ երկու երկիրներուն բարեկամութիւնը «չի կրնար խանգարուիլ մեր հակառակորդներուն ծիծաղելի փորձերով»:

ԱՆԳԼ. ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ որոշեց պետական հսկողութեան տակ առնել անթելի ամբողջ կազմակերպութիւնը:

ՖՐԱՆՍԱԿԱՆ ՈՒԹ ՄԱՐՏԱՆԱՒԵՐ, որոնք Ճիպրալթար գացեր էին շաբթուան սկիզբը, ճամբայ ելան դէպի արեւելք:

ՀՈԼԱՆՏԱՅԻ նահանգային ընտրութիւններուն մէջ նացիները ծանրապէս կորսնցուցին. նախապէս ունէին 44 պատգամաւորներ. յաջողեցան վերընտրել միայն 23ը:

ՅՈՒՆԱՍՏԱՆԻ բոլոր կողմերէն հեռագիրներ ուղղելով վարչապետ Մէթաքսասի, գոհունակութիւն կը յայտնեն կառավարութեան հետեւած քաղաքականութեան համար: Վարչապետը պտոյտի մեկնած է Պելոպոնէսի շրջանը, ինչ որ կը նշանակէ թէ քաղաքական ծանր դէպքեր չեն նախատեսուիր: Յունական ազգային դրամատունը որոշեց իր թղթադրամի շրջաբերութիւնը աւելցնել 1.300.000 սթերլինով:

ՃԱՓՈՆԻ մէջ բնակիչ օտարականները մայիս 1էն սկսեալ պարտաւոր են արձանագրուիլ ոստիկանութեան մօտ:



Le Gerant : H. STEPHAN

Imprimerie A-DER (AGOPIAN) 17, Rue Dauesme .. Paris (13)

